Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 6 1948

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ




Խմբագրության հասցեն.— *Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 33—86։*


# ԼԱՅՆՈՐԵՆ ԾԱՎԱԼԵԼ ՄԱՍՍԱՅԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ԳՅՈՒՂՈՒՄ

Մեր երկրի գյուղատնտեսությունը թևակոխել է հետպատերազմյան ստալինյան հնգամյակի երրորդ վճռական տարին։

Իրագործելով ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումի պատմական որոշումը, Սովետական Հայաստանի կոլտնտեսային գյուղացիությունն զգալի հաջողություններ է ձեռք բերել գյուղատնտեսության բնագավառում։ 1947 թվականին հացահատիկի ցանքերի յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով երկու և կես ցենտներ ավելի բերք ստացվեց, քան 1946 թվականին։ Բարձր բերքի համար ծավալված սոցիալիստական մրցության մեջ գյուղատնտեսության առաջավորները հասան փայլուն ցուցանիշների, նրանցից շատերը յուրաքանչյուր հեկտարից ստացան հացահատիկային կուլտուրաների մինչև 40 ցենտներ բերք, լավագույններից լավագույններն արժանացան Սո-

ցիալիստական Աշխատանքի Հերոսի բարձր կոչման:

Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի 31-րդ պլենումը քննության առնելով «Հետպատերազմյան ժամանակաշրջանում գյուղատնտեսության վերելքի միջոցառումների մասին» ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումի որոշումը 1948 թվականին իրագործելու միջոցառումների հարցը, գյուղատնտեսության բնագավառի աշխատողների առջև մարտական խնդիր դրեց՝ 1948 թվականին հասնել գյուղատնտեսության նոր վերելքի և պատվով կատարել սովետական ժողովրդի մեծ առաջնորդ ընկեր Ստալինի ցուցումը՝ սովետական պետության հզորությունն էլ ավելի ամրապնդելու, մեր երկրի համար պարենամթերքի և հումքի առատություն ստեղծելու մասին:

Այդ խնդիրն իրականացնելու գործում մեծ դեր ունի մասսայական-քաղաքական աշխատանքի կազմակերպումն ու հետագա ուժեղացումը կոլխոզային գյուղացիության լայն մասսաների մեջ:

Ընկեր Ստալինը սովորեցնում է, որ «տնտեսական հաջողությունները, նրանց



կայունությունն ու հարատևությունն ամբողջովին ու լիովին կախված են պարտիական-կազմակերպական և պարտիական-քաղաքական աշխատանքի հաջողություններից»: Այստեղից պարզ է, թե ինչպիսի խոշոր նշանակություն ունի մասսայական-քաղաքական աշխատանքի ճիշտ կազմակերպումը գարնանային դաշտային աշխատանքների շրջանում:

Գյուղում գարնանային գյուղատնտեսական աշխատանքների նախապատրաստման ու անցկացման ընթացքում մասսայական-քաղաքական աշխատանքը կազմակերպելու մեջ մեծ է մեր գյուղական ագիտատորների դերը: Ագիտատորը կոչված է սոցիալիստական գյուղի յուրաքանչյուր աշխատավորին հասցնելու բոլշևիկյան խոսքը, կոլխոզային լայն մասսաներին բացատրելու 1948 թվականի գարնանացանի վճռական նշանակությունը՝ հետպատերազմյան ստալինյան հնգամյակը ժամկետից շուտ կատարելու գործում: Ագիտատորն իր ամբողջ աշխատանքը պետք է կազմակերպի այնպես, որ այն մոբիլիզացնի կոլխոզնիկներին ու կոլխոզնիկուհիներին, գյուղատնտեսության բոլոր աշխատողնե-

րին՝ գարնանային գյուղատնտեսական աշ-
խատանքներն օրինակելիորեն կատարելու
համար:

Սակայն մի շարք տեղերում մասսայական-
քաղաքական աշխատանքն անուշադրու-
թյան է մատնված: Այսպես օրինակ, Աշ-
տարակի շրջանի Մուղնի, Օշական, Ոսկե-
վազ և այլ գյուղերում ագիտատորները
շաբաթներով չեն լինում բրիգադաներում.
քաղաքական զրույցներ չեն անցկացնում
կոլխոզնիկների հետ: Մասսայական-քաղա-
քական աշխատանքը զգալիորեն թուլացել է
նաև Սևանի շրջանի մի քանի գյուղերում-
Չկալովկայում, Սեմյոնովկայում, Ցայլիում
վերջին ժամանակներս հազվադեպ են կազ-
մակերպվում զրույցներ: Շատ դեպքերում
ագիտատորների զրույցները կրում են
նեղ արտադրական բնույթ, կոլխոզնիկներին
չեն բացատրում ընթացիկ մոմենտի և
միջազգային դրության կարևոր հարցերը:
Հաճախ էլ մասսայական-քաղաքական աշ-
խատանքը չի ընդգրկում կոլխոզնիկների
լայն խավերին: Իրենց գործը հեշտացնելու
համար, ագիտատորները զրույցներ կազմա-
կերպում են միայն կոլխոզային ակտիվի
համար, մոռացության տալով կոլխոզնիկ-
ների հիմնական մասսային:



Մասսայական-քաղաքական աշխատանքը
ավելի մեծ արդյունք կտա այն ժամանակ,
երբ այն կազմակերպվում է բուն մասսայի
մեջ անմիջականորեն դաշտում՝ դաշտավա-
րական և տրակտորային բրիգադաներում:
Դաշտում կազմակերպվող ագիտացիան հե-
տաքրքիր և բովանդակալից կլինի, եթե
ագիտատորը զրույցի ժամանակ արտա-
դրական-տնտեսական հարցերի հետ միա-
սին կոլխոզնիկներին հաղորդի Սովե-
տական Միության ներքին կյանքին ու ար-
տաքին քաղաքականությանը վերաբերող
նորություններ, բացատրի պարտիայի և կա-
ռավարության որոշումները, կապելով դրանք
կոլխոզնիկների պրակտիկ աշխատանքի
հետ:

Ագիտացիոն աշխատանքի կազմակերպ-
ման ժամանակ ագիտատորը պետք է
հաշվի առնի, թե տվյալ մոմենտին ինչպիսի
հարցեր են հետաքրքրում և հուզում կոլ-
խոզնիկներին: Իրենց կոլխոզի, շրջանի
կյանքից բերված կոնկրետ փաստերն ու
օրինակները կօգնեն ագիտատորին զրույց-
ները դարձնելու ավելի նպատակասլաց,
աշխույժ, հետաքրքիր ու բովանդակալից: Իր
բոլոր զրույցների ժամանակ ագիտատո-

քը պետք է իմանա, թե տվյալ շրջանում ի՞նչ հիմնական խնդիրներ են դրված կոլխոզի, բրիգադայի, օղակի առաջ և իր ամբողջ զրույցը անցկացնի այդ խնդիրների իրագործմանը նպաստելու ուղղությամբ։

Գարնանային դաշտային աշխատանքների հաջող անցկացման գործում շատ կարևոր նշանակություն ունի սոցիալիստական մրցության կազմակերպումը։ Սոցիալիստական մրցությունը կոլխոզային գյուղացիությանը դաստիարակում է աշխատանքի նկատմամբ սոցիալիստական վերաբերմունքի ոգով, նրանց մեջ զարգացնում է նախաձեռնություն և իրենց պարտավորությունների ազնիվ ու բարեխիղճ կատարման ձգտում։

Սոցիալիստական մրցությունը գարնանային դաշտային աշխատանքների ընթացքում ավելի մեծ հաջողություն կունենա միայն այն դեպքում, եթե սիստեմատիկորեն ըստուգվի ստանձնած պարտավորությունների կատարումը և արդյունքները լայնորեն մասսայականացվեն։ Յուրաքանչյուր մրցող պետք է ամեն օր տեսնի, թե ո՞վ և ի՞նչպես է կատարում իր ստանձնած պարտավորությունները։ Անհրաժեշտ է ժողովներում,



զեկուցումների ժամանակ, ագիտատորների զրույցների միջոցով, պատի թերթերում, հատուկ թերթիկներում սիստեմատիկաբար լուսաբանել մրցության արդյունքները, մրցության մեջ առաջավորներին և նրանց դրական փորձը։

Մրցության ընթացքը և նրա արդյունքները ցուցադրելու լավագույն միջոց են «Սոցիալիստական մրցության ցուցանիշների տախտակ»-ները, որ պետք է կազմակերպել յուրաքանչյուր կոլխոզում։

Ագիտացիոն աշխատանքի կարևոր ձևերից մեկն է գյուղատնտեսության առաջավորների, բարձր բերքի վարպետների փորձի լայն մասսայականացումը։ Սոցիալիստական Աշխատանքի Հերոսների մասին կազմակերպված զրույցների միջոցով ագիտատորները կոլխոզնիկներին պետք է բացատրեն բարձր բերք ստանալու նրանց գաղտնիքը, ծանոթացնեն նրանց աշխատանքի մեթոդներին։

Գարնանային դաշտային աշխատանքների շրջանում կազմակերպվող մասսայական-քաղաքական աշխատանքը չպետք է սահմանափակել միայն ագիտատորների զրույցներով։ Մասսայական-քաղաքական աշխա-

տանքի կազմակերպման մեջ պետք է լայնորեն ներգրավել կուլտուր-լուսավորական հիմնարկները, կինոն, թատրոնը, մամուլը, ռադիոն։

Անցյալ ընտրական կամպանիայի ընթացքում, ինչպես և նախորդ տարիներին գյուղական ագիտատորները բնակչության մեջ կատարվող մասսայական-քաղաքական աշխատանքի հարուստ փորձ են կուտակել։ Այդ փորձը պետք է լրիվին օգտագործել գարնանային դաշտային աշխատանքների նախապատրաստման ու անցկացման կապակցությամբ գյուղում ագիտացիոն-մասսայական աշխատանքն է՛լ ավելի ուժեղացնելու համար։

Գյուղական ագիտատորի խնդիրն է՝ մասսայական-քաղաքական աշխատանքի միջոցով մոբիլիզացնել կոլխոզային գյուղացիությանը այս տարվա գարնանային գյուղատնտեսական աշխատանքները հաջողությամբ կատարելու, 1948 թվականն է՛լ ավելի բարձր բերքի տարի դարձնելու համար։

---

ԳՅՈՒՂՏՆՏԵՍԱԿԱՆ ԹԵՄԱՆԵՐԻ ՇՈՒՐՋԸ

## ԱՇՆԱՆԱՑԱՆԻ ԳԱՐՆԱՆԱՅԻՆ ՓՈՑԽՈՒՄԸ

Աշնանացանի մշակման ագրոկոմպլեքսում գարնանային փոցխումը կարևոր նշանակություն ունեցող աշխատանքներից մեկն է։ Բարձր բերքի վարպետներն այդ միջոցառումը կիրառում են մեծ խնամքով, հաշվի առնելով յուրաքանչյուր հողամասի առանձնահատկությունները։ Աշնանացանը գարնանը շատ արագ է աճում և հենց այդ պատճառով էլ ազոտային սննդի մեծ կարիք է զգում։ Բույսերի այդ պահանջը բավարարելու տեսակետից վճռական նշանակություն ունեն սնուցում տալը և հողը փուխր վիճակում պահելու միջոցով նրանում կատարվող միկրոբիոլոգիական պրոցեսներն ուժեղացնելը։

Աշնանացանի գարնանային փոցխումը, փշրելով հողի մակերեսին գոյացած կեղևը, նախ մեծ չափով պակասեցնում է ջրի գոլորշիացումը և ապա ուժեղացնում հողի միկրո-

բիոլոգիական գործունեությունը։ Դրա հետևանքով աշնանացան հացահատիկներն իրենց կյանքի ամենավճռական ժամանակաշրջանում (բուռն աճման փազում) առատորեն ապահովվում են ջրով և սննդանյութերով, որը խոշոր նշանակություն ունի բարձր ու կայուն բերք ստանալու համար։

Աշնանացանի գարնանային փոցխումը կարևոր է նաև մի շարք մոլախոտերի դեմ պայքարելու տեսակետից։ Այդ բոլորից բացի, աշնանացանի գարնանային փոցխումը անհրաժեշտ է ցանքերից հեռացնելու համար այն բոլոր մեռած բուսական մնացորդները, որոնք մի շարք հիվանդությունների զարգացման ու տարածման օջախ են հանդիսանում։

Աշնանացանի ժամանակին և սեղմ ժամկետներում կատարված գարնանային փոցխման էֆեկտն ավելի բարձր է լինում վատ ֆիզիկական հատկություններ ունեցող հողերում, առանձնապես, երբ գարունը չորային է և ձգձգված, որովհետև այդպիսի պայմաններում հողն ավելի հաստ կեղև է կազմում, հետագայում ամրանում է, արագորեն չորանում և այդ բոլորի հետևանքով աշնանացանը դանդաղ է աճում։

Հայաստանի պայմաններում աշնանացանի գարնանային փոցխման նշանակությունն



ավելի մեծ է լեռնային և բարձր լեռնային շրջաններում, որտեղ գարնան համեմատաբար սառը եղանակների պատճառով աշնանացանը դանդաղ է աճում։ Սա դեռ չի նշանակում, թե աշնանացանի գարնանային փոցխումը պակաս արժեք ունի նաև նախալեռնային և ցածրադիր շրջանների պայմաններում։ Այստեղ էլ այդ միջոցառման բարձր էֆեկտը բացատրվում է հողերի առանձնահատկությամբ՝ նրանց ուժեղ կեղևակալելու և արագ չորանալու հատկությամբ։

Այս տարվա եղանակները հիմք են տալիս ենթադրելու, որ Հայաստանի բոլոր շրջաններում աշնանացան հացահատիկները գարնանը աճելու են դանդաղ, հետևապես փոցխումը, ուժեղացնելով բույսերի կենսագործունեությունը, կտա ավելի մեծ էֆեկտ։

Լինում են նաև դեպքեր, երբ աշնանացան հացահատիկները գարնանը աճում են շատ արագ (առանձնապես նախալեռնային և ցածրադիր շրջաններում), որի հետևանքով հնարավորություն չի լինում ժամանակին փոցխելու այդ ցանքերը։ Ուշ փոցխելիս չորային եղանակներին գոյացած կեղևը պոկվում և վերածվում է առանձին աղյուսանման կտորների, որոնց հետ ամբողջապես պոկվում և

ոչնչանում են նաև հացաբույսերի շատ թըփեր, կամ լավագույն դեպքում մերկանում են նրանց արմատները, որոնց մի մասը նույնպես հետագայում չորանում է։ Մեր փորձերից մեկում ուշ փոցխած փորձահողամասերում ոչնչացավ աշնանացան ցորենի թփերի 20—25 տոկոսը, որի հետևանքով փոցխումը տվեց ոչ թե դրական, այլ բացասական արդյունք։

Միանգամայն ակներև է, որ ինչպես ուշ, այնպես էլ շատ վաղ փոցխումը պետք է տա և տալիս է բացասական հետևանք։ Նոր-Բայազետի շրջանի Բաղիկյան գյուղի հողերում մեր դրած փորձերից մեկում աշնանացան ցորենի խիստ վաղ գարնանային փոցխումը բացասական էֆեկտ տվեց այն պատճառով, որ փոցխելու ժամանակ հողը ավաղվում էր, ստացվում էր «ց խ փ ո ց խ», իր բոլոր բացասական հետևանքներով։ Այդ փորձահողամասերում փոցխելուց հետո հողն ավելի արագ էր չորանում ու կեղևակալում, քան նորմալ ժամկետներում փոցխած փորձահողամասերի հողը։

Ասածներից միանգամայն պարզ է, որ աշնանացանը գարնանը պետք է փոցխել վաղ, բայց այն ժամանակ միայն, երբ հողի քեշը



հկել է և «ցխփոցխ» չի ստացվում (փոցխի ատամի հետքը չի ավաղվում)։ Փոցխելու ճիշտ ժամանակը որոշելու համար անհրաժեշտ է հողի չորանալուն զուգընթաց ընտրել առանձին հողակտորներ և այդտեղ ստուգողական-փորձնական փոցխում կատարել։ Եթե պարզվի, որ հողը փոցխելու ժամանակն է, ապա առանց ժամանակ կորցնելու անմիջապես պետք է փոցխել տվյալ մասսիվի բոլոր ցանքերը։

Գիտահետազոտական տվյալները ցույց են տալիս, որ աշնանացանի գարնանային փոցխման էֆեկտը տատանվում է լայն սահմաններում։ Հարավի պայմաններում վաղ փոցխումը աշնանացանի բերքը բարձրացնում է 10—15 տոկոսով, իսկ ուշ փոցխումը, ընդհակառակը, բերքն իջեցնում է մինչև 5 տոկոսով։ Գրականության մեջ ցուցումներ կան նաև այն մասին, որ փուխր, ավազային և չկեղևակալող հողերում աշնանացանի փոցխումը կամ բոլորովին էֆեկտ չի տալիս, կամ այդ էֆեկտը մինիմումի է հասնում։

Փոցխման քանակի (թվի) մասին պարզ պատկերացում տալիս են արտադրական փորձերի տվյալները։ Այդ տվյալների համաձայն Հայաստանի բարձր լեռնային շրջաննե-

րում և խոնավության հարուստ պայմաններում ավելի լավ արդյունք տալիս է երկու հետք կատարած փոցխումը, իսկ մնացած շրջաններում ու պայմաններում առավելությունը շահում են այն ցանքերը, որտեղ փոցխումը կատարվում է մեկ հետք:

Փոցխելու տեխնիկան շատ պարզ է և հեշտ իրականանալի: Հայաստանի պայմաններում այդ նպատակի համար օգտագործում են «զիգզագ» ատամնավոր փոցխը, իսկ տեղ-տեղ էլ նաև տեղական միաշար երկաթյա ատամներով փոցխը: Գիտահետազոտական աշխատանքները ցույց են տալիս, որ ուշ փոցխելու դեպքում լավ է ատամնավոր փոցխերը փոխարինել ռոտացիոն հողուրագներով, որոնց աշխատանքի ժամանակ անհամեմատ ավելի քիչ բույսեր են վնասվում:

Երբ ցանքերը ենթադրվում է փոցխել մեկ հետք, ապա այդ աշխատանքը պետք է կատարել շարքերին ուղղահայաց կամ թեք (հակառակ) ուղղությամբ, որովհետև շարքերի ուղղությամբ փոցխելիս գործիքի ատամները, անցնելով շարքերի ամբողջ երկարությամբ, վնասում են մեծ թվով բույսեր (բույսերն արմատահան են արվում): Ճիշտ է, ուղղահայաց կամ թեք փոցխելիս ևս բույ-



սերը որոշ չափով տուժում են, բայց այդ դեպքում արմատահան են լինում քիչ թվով բույսեր, որը առանձին վտանգ չի սպառնում, որովհետև շարքերում բույսերը համարյա միշտ խիտ են լինում:

Նոր-Բայազետի շրջանի Բաղիկյան գյուղում մեր դրած փորձերից պարզվեց, որ շարքերին հակառակ ուղղությամբ փոցխած փորձահողամասերը տալիս են 15—20 տոկոս ավելի բերք, քան շարքերի ուղղությամբ փոցխած փորձահողամասերը:

Բազմաթիվ փորձերից պարզվել է, որ աշնանացան հացահատիկների գարնանային փոցխումն առավել բարձր էֆեկտ տալիս է այն դեպքերում, երբ այն կապակցվում է սնուցման հետ, ըստ որում նախ շաղ են տրվում պարարտանյութերը (հանքային կամ օրգանական) և ապա իսկույն փոցխի միջոցով խառնվում հողի հետ:

Հայաստանի բոլոր շրջաններում ազոտային պարարտանյութերով կատարած սնուցումը տալիս է ավելի մեծ արդյունք, քան այլ պարարտանյութերով կատարած սնուցումը: Սակայն ամենից մեծ էֆեկտ ստացվում է, երբ ցանքերին տրվում է ազոտական և ֆոս-

ֆորական սնուցում միասին և միաժամանակ։

Աշնանացան հացահատիկների խնամքի սիստեմում գարնանային փոցխման կարևոր նշանակությունը (ժամանակին և բարձրորակ կատարելիս) բացատրվում է նաև նրանով, որ այդ աշխատանքի ժամանակ ոչնչանում են մեծ թվով միամյա գարնանային մոլախոտեր, որոնց ծիլերը փոցխելու ժամանակ դեռ թույլ են լինում, հողի մեջ խոր գնացած արմատներ չեն ունենում և հեշտությամբ արմատախիլ են լինում ու ոչնչանում։ Այդպիսի մոլախոտերի թվին են պատկանում, օրինակ, վայրի շաղկամուկը և այն բոլոր բույսերը, որոնց շաքիլները և առաջին տերևները լայն են լինում։

Ախտայի շրջանի Ռնդամալ գյուղում մենք կատարեցինք արտադրական փորձերի հաշվառում, որից պարզվեց, որ աշնանացան ցորենի գարնանային փոցխումը (մեկ հետք) մոլախոտերի քանակը պակասեցնում է 60—80 տոկոսով, իսկ ցորենի բերքը դրա հետևանքով ավելանում է մինչև 15—18 տոկոսով։

Այսպիսով, աշնանացան հացահատիկների բերքատվության բարձրացման գործում կա-



րևոր նշանակություն ունի նաև գարնանային փոցխումը։ Սակայն դրա բարձր էֆեկտն ապահովվում է այն դեպքում միայն, երբ այն կատարվում է ժամանակին, ճիշտ և բարձրորակ։ Փոցխելու քանակի, գործիքի և ժամանակի հարցը լուծելիս խստորեն պետք է հաշվի առնել հողի ու կլիմայի առանձնահատկությունները և մշակվող կուլտուրայի տեսակն ու նրա վիճակը։ Երբեք չպետք է մոռանալ այն կարևոր հանգամանքը, որ ինչպես խիստ վաղ «ցխփոցխումը», այնպես էլ ուշացած և ցածրորակ փոցխումը տալիս են միայն բացասական հետևանք։

Պրոֆեսոր Գ. ԱՂԱՋԱՆՅԱՆ

# ՀԱՅՐԵՆԱԴԱՐՁ ՔԱՂԱՔԱՑԻՆԵՐԸ

Սովետական կառավարության և անձամբ
հայ ժողովրդի մեծ բարեկամ ընկեր Ստալինի
հայրական հոգատարության շնորհիվ
վերջին երկու տարում Բուլղարիայից, Ռու-
մինիայից, Հունաստանից, Սիրիայից ու Լի-
բանանից, Ֆրանսիայից, Եգիպտոսից, Պա-
ղեստինից, Իրանից, Իրաքից, Ամերիկայի
Միացյալ Նահանգներից և Չինաստանից
Սովետական Հայաստան վերադարձան ավե-
լի քան 86 հազար հայեր։

Հայրենի հողից քշված, տասնյակ տարի-
ներ օտարության մեջ խրավազուրկ ու չար-
քաշ կյանք վարած մեր հարազատները հայ-
րենի երկրում ջերմ ընդունելության արժա-
նացան։ Սովետական կառավարությունը,
կոմունիստական պարտիան և սովետա-
կան հայրենասեր քաղաքացիները ջերմ
ու անկեղծ սիրով են շրջապատել հայրենա-
դարձ մեր եղբայրներին ու քույրերին։

Հազարավոր հայրենադարձներ մեծ ոգևո-



րությամբ աշխատում են սոցիալիստական
արդյունաբերության մեջ՝ գործարաններում
ու ֆաբրիկաներում, հնգամյակի նորակա-
ռույցներում, երկաթուղում և արհեստագոր-
ծական կոոպերացիայի արտելներում, դրսե-
վորելով իրենց սերն ու նվիրվածությունը
սովետական Հայրենիքին, մեծ Ստալինին,
անձնվիրաբար պայքարում են հետպատե-
րազմյան ստալինյան հնգամյակը ժամկետից
շուտ՝ չորս տարում կատարելու համար։

Ահա նրանցից մի քանիսը։

Երևանի Գյուղգործիքների գործարանումն
են աշխատում Բուլղարիայից 1946 թ. ներ-
գաղթածներ՝ Արամ Աբալյանը և Ոսկան
Թերզյանը։ Արամը դարձել է հմուտ խառատ,
իսկ Ոսկանն առաջ է քաշվել փականագործ-
ների բրիգադիր։ Նրանցից յուրաքանչյուրն
իր ամսեկան առաջադրանքը սիստեմատիկա-
բար կատարում է 400—600 տոկոսով և ավե-
լին։ Վերջերս նրանք կատարեցին իրենց հըն-
գամյա պլանը և այժմ աշխատում են 1951
թվականի հաշվին։

Նույն գործարանում աշխատում է 1946
թվին Բեյրութից ներգաղթած 20-ամյա Սար-
գիս Նազիկյանը։ Օտար երկրում նա չուներ
մասնագիտություն և մեծ դժվարությամբ էր
ձեռք բերում օրվա հացը։

Հարազատ երկրում երիտասարդին օգ-
նեցին ձեռք բերելու խառատի մասնագիտու-
թյունը։ Այժմ Ս. Նազլիկյանն անցել է ինք-
նուրույն աշխատանքի և ամսեկան պլանները
կատարում է 150—300 տոկոսով։

Մայր և աղջիկ Աղավնի և Եղիսաբեթ Օ-
հանյանները, որ 1946 թ. ներգաղթեցին Սի-
րիայից, արտասահմանում գործազուրկ էին
և ապրում էին կիսաքաղց. իսկ այժմ նրանք
առաջավոր կաբելագործների շարքումն են,
իրենց պլանները կատարում են 200—300
տոկոսով, և յուրաքանչյուրն ստանում է
ամսեկան 700—800 ռուբլի։ Գործարանը նը-
րանց տան կառուցման համար տրամադրել
է շինանյութ և փոխադրական միջոց։

Երևանի Կոշիկի № 3 ֆաբրիկայում բոլորը
ճանաչում են հայրենադարձներ Թորոս Ե-
րամյանին և Մարիա Կարճիկյանին, որոնք
իրենց շնորհալի աշխատանքով նվաճել են
կոլեկտիվի սերն ու համակրանքը։ Աշխա-
տանքի ստախանովյան մեթոդը նրանց օգնեց
դեռ անցյալ տարվա նոյեմբերի 7-ին կատա-
րելու երկու տարվա պլան, և այժմ աշխա-
տում են 1949 թվի հաշվին։

Այդպես են աշխատում վերջերս Երևանի
Քաղաքային Սովետի դեպուտատներ ընտր-
ված՝ Կիրովի անվան գործարանի անվանի



փականագործ Գրիգոր Դեմիրճյանը (Բեյրու-
թից), «Կրասնի Շվեյնիկ» կարի արտելի բան-
վորուհի Սիրուն Բալայանը (Հունաստանից)
և շատ ու շատ ուրիշներ։

Օտարության մեջ ընչազուրկ հայ շինակա-
նը տարիներ շարունակ երազել էր մի կտոր
հողի մասին։ Միայն սովետական երկրում
իրագործվեցին նրա իղձերը։ Եվ հայրենա-
դարձ հողագործներն այսօր մեծ ոգևորու-
թյամբ աշխատում են կոլխոզային դաշտե-
րում, այգիներում ու պլանտացիաներում։

1946 թվին խանական Իրանից հայրենիք՝
Սովետական Հայաստան վերադարձավ Սուլ-
թան Բաղրամյանը, և ընդունվեց Ախտայի
շրջանի Ցանտան գյուղի՝ ընկ. Գր. Հարու-
թյունյանի անվան կոլխոզը։ Երիտասարդ
հայրենասերը հենց առաջին օրերից արժա-
նացավ կոլխոզնիկների ուշադրությանը։ Նա
չտեսնված եռանդով աշխատում է հայրենա-
կան համայնական հողի վրա և ոչ մի ջանք
չի խնայում օգնելու իր ընկերներին բարձր
բերք ստանալու համար։ Երիտասարդ հայրե-
նադարձի ջանքերն իզուր չանցան — հաղթա-
նակը նվաճվեց։ 1947 թվին Սուրեն Վար-
դանյանի օղակը, որտեղ աշխատում է Սուլ-
թան Բաղրամյանը, իր մշակած 8 հեկտար
ցանքի յուրաքանչյուր հեկտարից ստացավ

30,87 ցենտներ յուրեն։ Օղակավար Ս. Վարդանյանին շնորհվեց Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում, իսկ նրա օղակի անդամ՝ հայրենադարձ Ս. Բաղրամյանը պարգևատրվեց Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշանով։

Անասնապահական Կալինինոյի շրջանի Սարատովկա գյուղի կոլխոզնիկ՝ հայրենադարձ Գ. Ավետիսյանի ընտանիքը 1947 թ. վաստակել էր 1457 աշխօր, որի դիմաց ըստացավ ավելի քան 132 փութ կարտոֆիլ, 10 փութ յուղ, 28 փութ պանիր, 20 փութ հացահատիկ, 1,5 փութ մեղր, 4500 ռուբլի դրամ և այլ մթերքներ, չհաշված տնամերձ հողամասից ստացած եկամուտը։

Հունաստանից ներգաղթած Կարապետ Թերզյանն Ալավերդու շրջանի Ծաթեր գյուղի կոլխոզում աշխատում է որպես ծխախոտագործական օղակի օղակավար։ Նույն օղակում աշխատում են նաև նրա երկու աղջիկները։ 1947 թվին Կ. Թերզյանի օղակը 7 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից 8,5 ցենտների փոխարեն ստացավ 12,5 ցենտներ լավագույն ծխախոտ։ Սիսիանի շրջանի Բորիսովկա գյուղում բնակություն հաստատած 24 հայրենադարձ ընտանիքներ ստացել են այնքան պարենամթերք,



որը նրանց կբավարարի մի քանի տարի։ Օրինակ, հայրենադարձ Խաչիկ Ինջիղուլյանի ընտանիքը, որը բաղկացած է 11 շնչից, իր աշխօրերի դիմաց ստացել է 600 փութ հացահատիկ, 5 փութ յուղ, 11 փութ պանիր և այլ մթերքներ։

Վերադառնալով հայրենի երկիրը՝ Սովետական Հայաստան, հարյուրավոր հայ մտավորականներ գիտության, արվեստի և կուլտուրայի օջախներում լայն հնարավորություն ստացան դրսևորելու իրենց մտավոր կարողությունները, հաստատցնելու այն, սովորելու մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ ուսմունքը և աշխատավորական լայն մասսաների հետ միասին մասնակցելու կոմունիզմի կառուցմանը։

1946 թվին Ֆրանսիայից հայրենիք վերադարձավ բիոլոգիական գիտությունների պրոֆեսոր-դոկտոր Մ. Տեր-Կարապետյանը և աշխատանքի անցավ Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիայի Անասնապահական ինստիտուտում, որպես ֆերմենտների և ըսպիտակուցների լաբորատորիայի վարիչ։ Գիտնականի համար կահավորվեց հարուստ լաբորատորիա, որտեղ նա ներկայումս աշխատում է գիտական լուրջ պրոբլեմների

մշակման վրա։ Անցյալ տարի հայրենադարձ
գիտնականն ընտրվեց Հայկական ՍՍՌ Գի-
տությունների Ակադեմիայի թղթակից-ան-
դամ, նա Երևանի Քաղաքային Սովետի դե-
պուտատ է։

Հայրենադարձ Հրանտ Դեվեջյանը, որն ար-
տասահմանում՝ Բեյրութում կատաղի պայ-
քար էր մղում անգլո-ամերիկյան իմպերիա-
լիզմի գործակալ դաշնակների դեմ, հայրենի
երկրում կարճ ժամանակամիջոցում արժա-
նացավ մայրաքաղաքի հասարակության հա-
մակրանքին։ Ընկ. Դեվեջյանն ընտրվեց Երե-
վանի Քաղաքային Սովետի դեպուտատ, իսկ
Քաղաքային Սովետի առաջին սեսիան նրան
հաստատեց Քաղսովետի Կուլտ-լուսբաժնի
վարիչ և ընտրեց Քաղսովետի Գործկոմի ան-
դամ։

Հունաստանից ներգաղթած բանաստեղծ
Վահան Դադեսյանը նույնպես ընտրվել է Ե-
րևանի Քաղսովետի դեպուտատ։ Վերջերս
լույս տեսավ նրա բանաստեղծությունների
ժողովածուն։

Հայրենադարձ նկարիչ Ռաֆայել Շիշման-
յանը և 17 այլ նկարիչներ Հայաստանի Նկա-
րիչների Միությունում բեղմնավոր ստեղծա-
գործական աշխատանք են կատարում։
Ստեղծագործական եռուն աշխատանքի են



լծված մի քանի տասնյակ արվեստագետներ՝
երաժիշտներ Քյոսեյանը, Ջանգոյանը, դե-
րասանուհիներ Թագուհի Քեսեյանը, Արմինե
Թութունջյանը, դերասան Երկաթ Միհրանը
և ուրիշներ։

***

Հայրենադարձները հայրենի երկրում կա-
տարելով սովետական քաղաքացու պար-
տականությունները, լայն կերպով օգ-
տագործում են սովետական քաղաքա-
ցու իրենց իրավունքները։ Այդ մա-
սին են խոսում անցյալ տարվա դեկտեմբե-
րին տեղի ունեցած աշխատավորների դեպու-
տատների տեղական Սովետների ընտրու-
թյունները։ Իբրև կոմունիստների և անկուսակ-
ցականների ստալինյան բլոկի թեկնածու-
ներ՝ 388 հայրենադարձ քաղաքացիներ ըն-
տրրվեցին տեղական Սովետների դեպու-
տատ։ Նրանցից 272-ը՝ Աշխատավորների
դեպուտատների գյուղական Սովետների,
17-ը ավանային, 42-ը՝ շրջանային և 57-ը՝
քաղաքային Սովետների դեպուտատներ են։

Հայրենադարձներ՝ Լենինականի Մսի կոմ-
բինատի բանվոր Մարտիրոս Կարապետյակ-
յանը, Արտաշատի շրջանի կոլխոզնիկ Մա-
թևոս Խաչատրյանը, բժիշկ Գևորգ Մանու-
չակյանն ընտրված են Ռեսպուբլիկայի

բարձրագույն օրգանում՝ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետում։

Հայրենադարձները լայն չափով օգտվում են Ստալինյան Կոնստիտուցիայով տրված կրթության իրավունքից։ Ռեսպուբլիկայի բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորում են 337 երիտասարդ հայրենադարձներ, մասսայական դպրոցներում ընդգրկված են 7-ից մինչև 17 տարեկան 13.500 երեխա, բանվորա, գյուղերի դպրոցներում և ֆաբզավուսներում ավելի քան 2400 պատանիներ։ Հայրենադարձներից մոտ 7000 հոգի դպրոցներում և խմբակներում վերացնում են իրենց անգրագիտությունն ու կիսագրագիտությունը։

Սովետական կառավարությունը, մեր մեծ ժողովուրդը, հաղթահարելով հետպատերազմյան դժվարությունները, նյութական լայն հնարավորություններ ստեղծեցին արտասահմանից ներգաղթած ընտանիքների ընդունման և տեղավորման համար։ Միայն 1947 թվին այդ նպատակի համար ծախսված են տասնյակ միլիոն ռուբլիներ։

Ռեսպուբլիկայի բոլոր քաղաքներում և գյուղերում հայրենադարձների համար գեղեցիկ բնակարաններ են կառուցվում։ Այդ նր-



պատակով պետությունը բաց է թողնում մեծ միջոցներ։

Հայրենադարձ յուրաքանչյուր ընտանիք, որը ցանկանում է իր համար տուն կառուցել, պետությունից երկարատև վարկ է ստանում։ Քաղաքներում նրանք կարող են ստանալ 30 հազար, իսկ գյուղերում 25 հազար ռուբլի վարկ, 15 տարվա ընթացքում մարելու պայմանով։ Վարկից բացի՝ տուն կառուցող հայրենադարձներին տրվում է հողամաս և շինանյութ, իսկ հիմնարկ-ձեռնարկությունները անհատ կառուցողներին օգնում են փոխադրական միջոցներով, շինարարական և այլ նյութերով։

Ռեսպուբլիկայի քաղաքներում և գյուղերում անհատական կարգով տուն կառուցողներին միայն 1947 թվին բաց է թողնվել երկարատև վարկ ավելի քան 134 միլիոն ռուբլի։

Ներգաղթի սկզբից մինչև 1948 թվի հունվարի 1-ը երկարատև վարկի հաշվին կառուցվել և շահագործման է հանձնվել ավելի քան 2500 տուն։ Մինիստրությունների, գերատեսչությունների և տեղական Սովետների գծով կառուցվել է 2660 բնակարան, շինարարության պրոցեսումն են 7680 բնակարան

և տուն։ Մեծ շինարարություն է ծավալվում
1948 թվին։

Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին
կից Վերաբնակեցման Վարչությունը Բերիա-
յի, Էջմիածնի և Վեդու շրջաններում կառու-
ցում է 10 ավան, որտեղ բնակվելու են
հայրենադարձ հայերը։ Այդ ավաններն ունե-
նալու են իրենց դպրոցները, ակումբները,
ջրմուղը և այլն։ Այժմ այդ ավաններից յու-
թում արդեն բնակվում են հայրենադարձ-
ները։ Այս տարի ավաններում պետք է կա-
ռուցվեն և շահագործման հանձնվեն 1123
տուն ևս։ Երեք ավանում՝ Վեդու շրջանի
«Նոր կյանք» և Էջմիածնի շրջանի «Արա-
րատ» ու «Հայկաշեն» ավաններում կազմա-
կերպված են կոլխոզներ։

Պետական օժանդակության հետ միասին,
հայրենադարձներին դրամական և պարենա-
յին մեծ օգնություն են ցույց տալիս Սովե-
տական Հայաստանի աշխատավորները, ձեռ-
նարկությունները, հիմնարկությունները, զա-
նազան կազմակերպությունները, սովխոզ-
ներն ու կոլխոզները։

Սովետական Միության Կառավարության
1945 թ. նոյեմբերի 21-ի պատմական որո-
շումը՝ «Արտասահմանում գտնվող հայերի



ներգաղթը թույլատրելու և այն կազմակեր-
պելու վերաբերյալ», լայն հնարավորություն-
ներ ստեղծեց իրականացնելու հայ ժողովր-
դի դարավոր իղձը, այն է՝ վերադառնալ
Հայրենիք— Սովետական Հայաստան, իրենց
ժողովրդի մոտ, իրենց մայր երկիրը։ Միջազ-
գային ռեակցիայի և նրա կամակատար դաշ-
նակների ոռնոցն ու արհեստական դժվարու-
թյուններ ստեղծելը անզոր են կասեցնելու
օտարության մեջ գտնվող հայերի ներգաղթը
Սովետական Հայաստան։ Բոլշևիկների պար-
տիան, մեծ Ստալինի ցուցումներով, մինչև
վերջ կիրականացնի հայ ժողովրդի դարավոր
իղձը։

Գուրգ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

# ՔԱՋԱՐԱՆՇԻՆ

*Բարձր լեռներում, Հայաստանի գեղատեսիլ անկյուններից մեկում՝ Օխչի-չայ գետի կիրճում գտնվում է Քաջարան գյուղը:*

*Այստեղ, շատ տասնյակ տարիներ առաջ, հայկական ժողովրդական հերոս Դավիդ-բեկը իր քաջ ռազմիկներով պաշտպանեց օտարերկրյա նվաճողներից Հայրենիքի պատիվն ու անկախությունը:*

*Անցան դարեր: Քաջարանն իր վրա գրավեց սովետական գիտնականների ուշադրությունը: Երկար ու համառ աշխատանքից հետո, նրանց հաջողվեց բանալ լեռների գաղտնիքը: Այստեղ հայտաբերվեցին մոլիբդենի հանքաքարի մեծ պաշարներ, որոնց հարուստ բազայի վրա սկսվեց մեծ շինարարություն:*

*Քաջարանշին— այսպես է կոչվում Սովետական Միության խոշորագույն պղինձ-մոլիբդենի կոմբինատի շինարարությունը: Մեր երկրի ժողովրդական տնտեսության վերականգնման և հետագա զարգացման հնգամյա պլանով նախատեսված է նաև Քաջարանի*



*պղինձ-մոլիբդենի կոմբինատի շինարարության ավարտումը ստալինյան նոր հնգամյակի ընթացքում:*

*Իրենց համառ ու հերոսական աշխատանքով, Քաջարանի շինարարներն իրականացնում են այդ մեծ ծրագիրը: Հաջողությամբ ավարտելով 1947 թվականի աշխատանքները, կոմբինատի շինարարներն այժմ մեծագույն եռանդով ձեռնամուխ են եղել այս տարվա պլանների կատարմանը:*

*Շինարարության կարևոր օբեկտներից մեկն է հզոր կարողություն ունեցող հարստացուցիչ ֆաբրիկան: Ներկայումս շինարարության այդ պատասխանատու տեղամասում արագ տեմպով ընթանում է սարքավորման մոնտաժը: Մոնտաժնիկները խոսք են տվել ամենասեղմ ժամկետում ավարտել մոնտաժի աշխատանքները և այս տարվա առաջին կիսամյակի վերջին շահագործման հանձնել փորձնական հարստացուցիչ ֆաբրիկան:*

*Կոմբինատի ապագա կոլեկտիվի համար, որը բաղկացած կլինի մի քանի հազար բանվորներից, ինժեներներից, տեխնիկներից ու ծառայողներից, կառուցվում են բարեկարգ ավաններ: Լայն կերպով ծավալվել է երկու*

երեք, չորս հարկանի տների կառուցումը՝ իրենց բոլոր հարմարություններով։ Արդեն շահագործման է հանձնված 3.500 քառակուսի մետր բնակելի տարածություն։ Այս տարի շահագործման են հանձնվելու միջնակարգ դպրոցի, ակումբի մեծ շենքերը և մի շարք բնակելի տներ։

Քաջարանի լեռնագործների մեջ լայն ծավալ է ստացել սոցիալիստական մրցությունը։ Արձագանքելով լենինգրադցիների կոչին լեռնագործները պարտավորություն են ստանձնել հանքերը շահագործման հանձնել սահմանված ժամկետից և հանքաքար կուտակել հարստացուցիչ ֆաբրիկայի համար։

Համառ աշխատանքի մեջ աճում են շինարարության սքանչելի մարդիկ։ Կոլխոզնիկները իրենց կյանքում առաջին անգամ այստեղ, այս շինարարության մեջ ձեռնարկեցին որմնադիրի, հորատողի, ծեփագործի բարդ մասնագիտությունների յուրացմանը։ Որմնադիր Հարությունյանը, քարտաշներ Թևան Մարգարյանը և Կարապետ Կարապետյանը, ծեփագործ Սամվել Երիցյանը, շոֆեր Արսեն



Պետրոսյանը, վուլկանիզատոր Կարապետ Կոստանյանը և շատ ուրիշներ ցույց են տալիս բոլշևիկյան աշխատանքի իսկական օրինակներ։

Չկա Քաջարանշինում աշխատանքի ոչ մի բնագավառ, որտեղ աշխատելիս չլինեն հայրենիք վերադարձած հայեր։ Նրանցից շատերն իրենց անձնվեր աշխատանքով հեղինակություն ու հարգանք են նվաճել շինարարության կոլեկտիվի մեջ։ Ն. Միրզոյանի, Գ. Բաբայանի, Գաբրիել Հարությունյանի, Գաբրիել Կանդալյանի անունները հայտնի են շինարարությունում։

Գիշեր ու ցերեկ չի լռում հորատող մուրճերի աղմուկը։ Կառուցվում է ստալինյան հնգամյակի խոշորագույն ձեռնարկություններից մեկը։ Շուտով Քաջարանի պղինձ-մոլիբդենի կոմբինատը կմտնի մետալուրգիական արդյունաբերության գործող ձեռնարկությունների շարքը, Սովետական Հայաստանի ժողովրդական տնտեսությունը կհարստանա արդյունաբերական մի նոր խոշոր ձեռնարկությունով։

# ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՈՒԺԵՐԻ ՀԱՂԹԱՆԱԿԸ ՉԵԽՈՍԼՈՎԱԿԻԱՅՈՒՄ

*Չեխոսլովակիայում վերջերս տեղի ունեցած կառավարական ճգնաժամն առաջացրել էին ռեակցիայի ուժերը։ Չեխոսլովակյան կառավարության մեջ երեք քաղաքական պարտիաների ռեակցիոն ներկայացուցիչները՝ ժողովրդա-սոցիալիստական, ժողովրդական և սլովակյան դեմոկրատական պարտիաներին պատկանող մինիստրները հրաժարական տվին, հույս ունենալով տապալել Ազգային ճակատի կառավարությունը։ Ըստ որում չեխոսլովակյան ռեակցիոներները գործում էին միջազգային ռեակցիայի թելադրանքով, Վաշինգտոնի հրամաններով։*

*Ի՞նչ ուժերի վրա էր հենվում չեխոսլովակ ռեակցիան երկրի ներսում և նրա սահմաններից դուրս։*

*Սովետական Բանակի կողմից Չեխոսլովակիան ազատագրվելուց հետո անցած տարիների ընթացքում չեխոսլովակյան ժողովուրդը խոշոր հաջողություններ է ձեռք բե-*



*բել իր ուժերը համախմբելու և դեմոկրատական բարեփոխումների հիման վրա երկրի ժողովրդական տնտեսությունը վերականգնելու գործում։ Մինչև պատերազմը Չեխոսլովակիայում տիրում էին միջազգային կոնցեռնների ու տրեստների հետ կապված մի բուռ խոշորագույն կապիտալիստները։ Այժմ դրանց տիրապետությունը տապալված է։ Ազգայնացված են լեռնային արդյունաբերությունը, վերամշակող խոշոր արդյունաբերությունը, ակցիոներական բանկերը, մասնավոր ապահովագրական ընկերությունները։ Բռնագրավված են և սակավահող ու հողազուրկ գյուղացիներին են բաժանված գերմանացիներին, հունգարացիներին, չեխ ու սլովակ ժողովուրդների դավաճաններին ու թշնամիներին պատկանող կալվածքները։ Խոշոր ձեռնարկությունների ազգայնացումը հնարավորություն տվեց պլանավորելու տնտեսությունը։ Չեխոսլովակիայի աշխատավորները խանդավառությամբ կատարում, իսկ արդյունաբերության մի շարք ճյուղերում գերակատարում են երկրի տնտեսության վերականգնման երկամյա պլանը։*

*Սակայն չնայած դեմոկրատական վերափոխումների իրականացման գործում չեխոսլովակյան ժողովրդի խոշոր հաջողություն-*

ներին, չեխոսլովակյան տնտեսության մի զգալի մասը մնացել է մասնավոր ձեռնարկատերերի ձեռքում։ Արդյունաբերության մեջ ազգայնացված են միայն 500-ից ավելի բանվոր ունեցող խոշոր ձեռնարկությունները, շինարարական արդյունաբերության մեջ պահպանվել են նույնիսկ մինչև 1000 բանվոր ունեցող մասնավոր ձեռնարկությունները։ Կապիտալիստների տարեկան եկամուտը Չեխոսլովակիայում կազմում է մոտավորապես 10 միլիարդ կրոն։ Այդ եկամտի բաժին է ընկնում 9 հազար չեխական ֆաբրիկանտներին և 6500 մեծածախ վաճառականներին, չհաշված Սլովակիայի կապիտալիստները։

Միայն չեխական մարզերում պահպանվել է 1115 մասնավոր արդյունաբերական ձեռնարկություն՝ 50-ից ավելի բանվորով։ Կապիտալիստական ձեռնարկություններում զբաղված է բոլոր արդյունաբերական բանվորների ավելի քան մեկ հինգերորդ մասը։ Արդյունաբերության մի շարք ճյուղերում մասնավոր կապիտալիստական հատվածը գերակշռում է ազգայնացված հատվածին։ Ագրարականների սիստեմատիկ սաբոտաժի հետևանքով մինչև վերջ հասցված չէ հողային ռեֆորմը. թեև գերմանացիների, հունգարացիների ու



դավաճանների հողերը բռնագրավված են, բայց չեխ ու սլովակյան շատ կալվածատերեր կարողացել են իրենց ձեռքում պահել խոշոր կալվածքներ։

Չեխոսլովակիայում մասնավոր կապիտալիստական հատվածի գլխավոր հենարանը մեծածախ առևտուրն է, որը 70 տոկոսով մնում է մասնավոր կապիտալիստների ձեռքում։ Չեխոսլովակիայի արտաքին առևտրի մինիստրության մանյովրների հետևանքով խոշոր առևտրականներն իրենց ձեռքումն են պահել ապրանքների ներմուծման 70 և արտահանման 50 տոկոսը։ Խոշոր մեծածախ վաճառականները սնում են սև շուկան, որը խիստ դժվարացնում է երկրի առջև կանգնած տնտեսական խնդիրների լուծումը։

Անգլո-ամերիկյան կապիտալը բոլոր հնարավորություններն օգտագործում է Չեխոսլովակիա թափանցելու համար։ Իզուր չէ, որ Վաշինգտոնում և Լոնդոնում սիրում էին Չեխոսլովակիան անվանել «կամուրջ Արևմուտքի ու Արևելքի միջև»։ Ամերիկյան ու անգլիական կապիտալիստների երևակայության մեջ Չեխոսլովակիան ներկայանում էր իբրև մի կամուրջ, որով հնարավոր էր ներխուժել դեպի Արևելք։

Ամերիկայի Միացյալ Նահանգների և Ան-

գլիայի կառավարողներն ամեն կերպ ձգնում էին իրենց ձեռքը վերցնել Չեխոսլովակիայի արտաքին առևտուրը։ Այդ գործում նրանց օգնում էր չեխոսլովակյան արտաքին առևտրի մինիստրությունը, որտեղ խրամատավորվել էին անգլո-ամերիկյան գործակալները։ Չեխոսլովակյան իմպորտի մեջ առաջին տեղը գրավեցին Միացյալ Նահանգները, երկրորդ տեղը՝ Անգլիան։ Չեխոսլովակիան հեղեղվեց ամերիկյան ու անգլիական ապրանքներով, կինոֆիլմերով, գրականությամբ։

Ինչպես սովորաբար լինում է, ապրանքների ու կինոֆիլմերի հետևից գալիս էին ամերիկյան ու անգլիական «տուրիստները»։ Դրանցից ոմանք ձգտում էին հասնել անգլո-ամերիկյան տնտեսական դիրքերի հետագա ամրապնդմանը, ոմանք անամոթ պրոպագանդա էին անում, մյուսները զբաղվում էին լրտեսությամբ և դավադրություններ նախապատրաստելով։

***

Միջազգային ռեակցիան կապեր հաստատեց չեխոսլովակյան որոշ քաղաքական պարտիաների ներսում եղած ռեակցիոն տարրերի հետ։

Դեռ 1945 թվականի ապրիլին, նախքան Սովետական Բանակի կողմից Չեխոսլովա-



կիայի լիակատար ազատագրումը, Ազգային ճակատի չեխոսլովակյան կառավարությունն արգելեց ֆաշիստական և ռեակցիոն պարտիաների գործունեությունը։ Սակայն այդ պարտիաների շատ ակտիվ անդամներ և նույնիսկ որոշ ղեկավարներ թաքնվեցին Ազգային ճակատի կազմի մեջ մտնող լեգալ պարտիաների ներսում, և քայքայիչ աշխատանք էին կատարում այդ պարտիաների մեջ։ Այդպես վարվեցին, օրինակ, ագրարային պարտիայի՝ կալվածատերերի և կուլակների պարտիայի նախկին ղեկավարներ Ցայերաբենդը և Սուխիյն, որոնք ապաստան գտան ժողովրդական-սոցիալիստական պարտիայի մեջ։ Այդպիսի մարդիկ զգալի դեր խաղացին չեխոսլովակյան ժողովրդի դեմ ռեակցիայի դավադրությունը նախապատրաստելու գործում։

Չեխոսլովակյան կառավարության նախկին կազմի մեջ ներկայացված էին հինգ պարտիաներ՝ կոմունիստները, սոցիալական դեմոկրատիայի պարտիան, ժողովրդական-սոցիալիստական պարտիան, ժողովրդական պարտիան, սլովակյան-դեմոկրատական պարտիան։

Ժողովրդական-սոցիալիստական պարտիան (որը վերջերս վերանվանվեց չե-

խոսլովակյան սոցիալիստական պարտիա) Օրենսդիր Ազգային ժողովի (պառլամենտի) վերջին ընտրությունների ժամանակ ստացավ 1 միլիոն 298 հազար 917 ձայն (ձայների 23 տոկոսից ավելին)։ Նա ունի պառլամենտական 55 մանդատ։ Դա մանր ու միջակ բուրժուազիայի և մանր բուրժուական ինտելիգենցիայի պարտիան է, բայց նրա մեջ մտնում են նաև խոշոր բուրժուազիայի առանձին ներկայացուցիչներ։ Ինչպես ասացինք, այդ պարտիայի մեջ ապաստան գտան չեխոսլովակյան ժողովրդի կողմից ջախջախված ռեակցիոն պարտիաների թափթփուկները։ Այսպիսով, այդ պարտիան իր կազմով միատարր չէ. գյուղի աշխատավորների կողքին, որոնք շահագրգռված են Ազգային ճակատի նշած սոցիալական-տնտեսական բարեփոխումները մինչև վերջը հասցնելով, նրա մեջ մտնում են գործարանատերերն ու կալվածատերերը, որոնք սաբոտաժի են ենթարկում այդ բարեփոխումները։

Նույնը կարելի է ասել ժողովրդական պարտիայի կազմի մասին, որն Օրենսդիր Ազգային ժողովի ընտրություններին հավաքեց 1 միլիոն 110 հազար 920 ձայն (ձայների 20 տոկոսից ավելին) և ստացավ պառլամենտական 47 մանդատ։ Այդ պարտիան կլ-



երական, կաթոլիկական պարտիա է։ Ռեակցիոն կաթոլիկական հոգևորականության ականավոր ներկայացուցիչները նրան ընդունեցին իբրև իրենց քաղաքական ակտիվության գլխավոր ասպարեզ։ Սակայն պարտիայի շարքային անդամները՝ գյուղացիները կողմնակից են Ազգային ճակատի ծրագրին։

Ռեակցիոն կլիկը հատկապես զգալի աջողություն է ձեռք բերել Սլովակիայի դեմոկրատական պարտիայի ներսում։ Վերջինս Օրենսդիր Ազգային ժողովի ընտրություններում ստացավ 988 հազար 275 ձայն, կամ Սլովակիայում տրված ձայների համարյա 62 տոկոսը։ Օրենսդիր Ազգային ժողովում Սլովակիայի դեմոկրատական պարտիան ունի 43 մանդատ։ Այդ պարտիայի ղեկավարության գլուխ սողոսկեցին Տիսոյի և Տուկիի բանդային պատկանող մոլի ֆաշիստներ. նրա շարքերում գործում են Վատիկանի ուղղակի գործակալները կաթոլիկական հոգևորականության թվից։ Վերջապես, Ամերիկայի Միացյալ Նահանգներում եղած սլովակյան ֆաշիստների կազմակերպությունն իր հերթին անմիջական կապեր էր հաստատել սլովակյան դեմոկրատական պարտիայի հետ։ Հատուկ ջանասիրությամբ Սլովակիա են այցելում ամերիկյան հետախուզությունների

գործակալները։ Նույն աջակցությունն ստանալով Ամերիկայից ու Վատիկանից, Սլովակիայի ֆաշիստական ընդհատակը հատուկ կենսունակություն է հանդես բերում։ Ըստ որում ներքին գործերի մինիստրության օրգանների կողմից Սլովակիայում մերկացված յուրաքանչյուր դավադրության թելերը միշտ էլ տարել են դեպի դեմոկրատական պարտիայի ղեկավարությունը։

Սրանք են այն երեք պարտիաները, որոնց ներկայացուցիչները փետրվարյան օրերին հայտարարեցին իրենց հրաժարականը կառավարության կազմից։

Բացի դրանցից, չեխոսլովակյան կառավարության մեջ ներկայացված են կոմունիստական պարտիան և սոցիալական դեմոկրատիայի պարտիան։

Կոմունիստական պարտիան ամենաազդեցիկ պարտիան է երկրում։ Օրենսդիր Ազգային ժողովի ընտրություններում կոմունիստները Չեխիայում և Մորավիայում ստացան 2 միլիոն 205 հազար 658 ձայն, կամ բոլոր ձայների ավելի քան 40 տոկոսը, Սլովակիայում—490 հազար 257 ձայն, կամ բոլոր ձայների 30 տոկոսից ավելին։ Օրենսդիր Ազգային ժողովի մեջ մտան 114 կոմունիստներ։ Կոմունիստական պարտիան ձգտում է



հետևողականորեն և մինչև վերջը կատարել Ազգային ճակատի ծրագիրը։ Նա հանդես է գալիս 50 բանվորներից ավելի ունեցող բոլոր ձեռնարկությունները ազգայնացնելու, ինչպես ներքին, այնպես էլ արտաքին մեծածախ առևտուրն ազգայնացնելու, 50 հեկտարից ավելի հողամասերը բռնագրավելու և բաժանելու օգտին։ Կոմունիստական պարտիան միակ պարտիան է, որն անհողդողդ հաստատակամությամբ պաշտպանում է աշխատավորների շահերը։

Սոցիալական դեմոկրատիայի պարտիան առաջ կոչվում էր չեխոսլովակյան սոցիալ-դեմոկրատական պարտիա։ Օրենսդիր Ազգային ժողովի ընտրություններում նա ստացավ 855.771 ձայն (ձայների 15 տոկոսից ավելին)։ Սոցիալական դեմոկրատիայի պարտիան մի շարք հարցերում համագործակցում է կոմունիստական պարտիայի հետ, սակայն նրա ներկայացուցիչների դիրքը տատանումների է ենթակա։ Այսպես օրինակ, երբ 1947 թվականի աշնանը չեխոսլովակյան կառավարությունը քննարկում էր միլիոնատերերի նկատմամբ միանվագ հարկ սահմանելու հարցը, սոցիալական դեմոկրատիայի պարտիայի ներկայացուցիչ՝ արդյունաբերության

մինիստրը ձեռնպահ մնաց քվեարկությունից, դրանով իսկ աջակցելով ռեակցիայի ուժերին։

***

Արտասահմանից ոգեշնչվող ու հրահրվող չեխոսլովակյան ռեակցիան վերջին ժամանակներս ուժեղացրել էր իր ոտնձգությունները։ Սեպտեմբերին հաղորդագրություն հրապարակվեց Սլովակիայում խոշոր հակապետական դավադրություն հայտաբերվելու մասին, որին մասնակցում էին սլովակյան դեմոկրատական պարտիայի մի շարք գործիչներ. այդ դավադրության թելերը տանում էին դեպի օտարերկրյա հետախուզությունները։ Երկրում ուժեղացավ կառավարության ձեռնարկումներին ցույց տրվող դիմադրությունը, աշխուժացավ սև շուկան, գյուղում մութ տարրերը կոչ էին անում վիժեցնել պետական մթերումները, ուժեղացավ ագիտացիան առաջավոր բանվորների դեմ, կոմունիստների դեմ։ Ժողովրդա-սոցիալիստական, ժողովրդական և սլովակյան-դեմոկրատական պարտիաների թերթերը, որոնք ընկել էին ռեակցիոներների ձեռքը, սկսեցին զբաղվել կոմպարտիայի և կոմունիստ մինիստրների հասցեին զրպարտություններ տարածելով։ Թե-



ակցիոն մամուլի էջերում ավելի ու ավելի հաճախակի սկսեցին երևան գալ հարձակումներ ընդդեմ Սովետական Միության՝ Չեխոսլովակիան ազատագրողի։ Կառավարության ներսում ռեակցիոներ-մինիստրները զբաղվում էին բացահայտ սաբոտաժով, վիժեցնում էին հետագա բարեփոխումների կիրառումը և փաստորեն ձախողում կառավարության գործունեությունը։

Պարզ է, որ ռեակցիան ամեն կերպ ձգտում է սրել իրադրությունը, երկրում իշխանությունն իր ձեռքը վերցնելու համար։ Ռեակցիոներները բացահայտորեն շտապում էին Օրենսդիր Ազգային ժողովի նոր ընտրությունների կապակցությամբ, որոնք նախատեսվում են մոտակա ամիսներին. ինչպես երևում է, ռեակցիոներներին շատ է անհանգստացնում ընտրությունների ելքը։

Փետրվարի կեսերին ռեակցիոներ-մինիստրները որոշեցին կոնֆլիկտ առաջացնել կառավարության ներսում, օգտագործելով պատահած առաջին առիթը. իբրև այդպիսի առիթ, նրանք ընտրեցին ազգային անվտանգության կորպուսի մի քանի սպաների պաշտոնափոխությունը, որ ձեռնարկել էր անվտանգության կորպուսի պետը Պրագայում։ Փետրվարի 20-ին ժողովրդական սոցիալիս-

տական, ժողովրդական և սլովակյան-դեմոկրատական պարտիաների անդամ-մինիստրները Ռեսպուբլիկայի պրեզիդենտին դիմում ներկայացրին հրաժարականի մասին: Ենթադրվում էր, թե երեք պարտիաների ներկայացուցիչների կոլեկտիվ հրաժարականը կտապալի կոմունիստ Գոտվալդի գլխավորած կառավարությունը և երկրում կառաջացնի իրարանցում, որի ժամանակ ռեակցիոներներին կհաջողվի իշխանության գլուխ անցնել:

Բայց ռեակցիան թերագնահատել էր դեմոկրատիայի ուժերը, չեխերի ու սլովակների Ազգային ճակատի ուժերը: Ռեակցիոներ մինիստրների լկտի ելույթը սթափեցրեց ամբողջ երկիրը: Քաղաքներում և գյուղերում տեղի ունեցան մասսայական ցույցեր ու միտինգներ, որոնց մասնակիցները վճռականորեն պահանջում էին կառավարությունից հեռացնել ռեակցիոներներին, և Գոտվալդի կառավարությունը համալրել Ազգային ճակատի ծրագիրը կատարելու ընդունակ մարդկանցով: Ամենուրեք սկսեցին կազմակերպվել գործողության կոմիտեներ, որոնց նպատակն էր Ազգային ճակատի կազմակերպություններն ու կառավարական հիմնարկները զտել ռեակցիայի թափթփուկներից: Ժողովրդական



-սոցիալիստական, ժողովրդական և սլովակյան-դեմոկրատական պարտիաների շարքային անդամները միացան ռեակցիայի դեմ ուղղված համաժողովրդական շարժմանը: Որոշ պարտիաների ներսում սկսվեց զտումը, ղեկավարության գլուխ եկան նոր մարդիկ:

Իրադարձությունների ընթացքում ակնառությամբ դրսևորվեց, որ չեխոսլովակյան ժողովրդի լայն մասսաները պաշտպան են կանգնած իրենց նվաճումներին, պաշտպան են կանգնած Ազգային ճակատի ծրագրին: Նաև դրսևորվեց այն, որ թեև ռեակցիոներները ունեն զգալի միջոցներ և գործում են օտարերկրյա զորեղ հովանավորների աջակցությամբ, Չեխոսլովակիայի ներսում նրանց հետևից գնում են միայն պարազիտ խավերը, որոնք պատրաստ են նորից երկիրը մատնել օտարերկրյա իմպերիալիստների ձեռքը, ինչպես նրանք այդ արին 10 տարի առաջ, Մյունխենյան դավադրության ժամանակաշրջանում:

Ժողովրդի կամքը հաղթեց: Փետրվարի 25-ին չեխոսլովակյան ռեսպուբլիկայի պրեզիդենտ Բենեշն ընդունեց ռեակցիոներ-մինիստրների հրաժարականը: Նույն օրը նա հաստատեց Կլեմենտ Գոտվալդի կազմած կառավարությունը: Նոր կառավարության մեջ ըն-

մրացվեց պառակտիչ մինիստրներից ու մեկը։ Ժողովրդական-սոցիալիստական պարտիայի, ժողովրդական պարտիայի, սլովակյան դեմոկրատական պարտիայի մինիստրներն այս անգամ այնպիսի մարդիկ են, որոնք վայելում են ժողովրդի վստահությունը։ Նոր կառավարության կազմում կա 12 կոմունիստ, սոցիալական դեմոկրատիայի պարտիայի 4 ներկայացուցիչ, 2 ժողովրդական սոցիալիստ, ժողովրդական պարտիայի 2 ներկայացուցիչ, սլովակյան դեմոկրատական պարտիայի 1 ներկայացուցիչ, սլովակյան «ազատության պարտիայի» 1 ներկայացուցիչ և 2 անպարտիական։

Բոլոր հիմքերը կան ենթադրելու, որ չեխոսլովակյան նոր կառավարությունը կկարողանա հաջողությամբ ավարտել Ազգային ճակատի ծրագրով նշված բարեփոխումները։

Չեխերի ու սլովակների Ազգային ճակատը վերջվայրյան իրադարձություններից դուրս եկավ ամրապնդված և նորոգված։ Բացի քաղաքական պարտիաներից, նրա մեջ մտան բանվորների, գյուղացիների, աշխատավոր ինտելիգենցիայի և այլ պրոգրեսիվ մասսայական կազմակերպություններ։ Նորոգված Ազգային ճակատը կհանդիսանա Չեխոսլովակիայի ազատության և անկախության հե-



ասլի հենարանը, սոցիալիզմի ուղիով նրա դեմոկրատական զարգացման երաշխիքը։

Ինչպես ասված է Չեխոսլովակիայի կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի մարտի 2-ին հրապարակված կոչի մեջ, «ներկայումս ինչպես ներքին, այնպես էլ միջազգային ռեակցիայի համար պետք է պարզ լինի, որ Չեխոսլովակիան չի վերադառնա հնին, այլ որ նա կընթանա առաջ, դեպի իր հայրենիքի ծաղկումը, դեպի ժողովրդի երջանկությունը, դեպի սոցիալիզմը»։

Վճռական գոտեմարտում առաջադիմության ուժերը Չեխոսլովակիայում հաղթանակ տարան ընդդեմ ռեակցիայի ուժերի։ Այդ հաղթանակն ունի խոշորագույն միջազգային նշանակություն, քանի որ դա ամրապնդում է դեմոկրատական ճակատի ուժերն ամբողջ Եվրոպայում։

Թ. ԻՍԱԿՈՎ

Գինը 50 կոպ

Պատասխանատու խմբագիր
ԱՐ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

ՎՖ 02875 Պատվեր № 277 Տիրաժ 8.550

Ստորագրված է տպագրության 5/IV 1948 թ.

Պոլիգրաֆ. և Հրատ. վարչ. № 2 տպարան, Երևան

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б)
Армении
Блокнот Агитатора